## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՊՈԼՍՈՅ տեղատարափ անձրեւները, ինչպէս գրեցինք, մեծ վնասներ պատճառած են։ Ողողուած են Լալէլի, Ֆաթիհի եւ Ենիգափուի շատ մը քովնտի փողոցներու տուները, Իսթանպուլի կողմը 81, Բերա 99, Սկիւտար 16, Գատըգիւղ 2, Պագրգիւղ 5։ Պէտք եղած է հրշէջ գինուորներու միջոցով պարպել ջուրերը։ Ջրհեղեղի պահուն հինգ հրդեհներ ծագած են։ 1000 տուներ ջուրերով լեցուած են։ Ժայռի կտորներ իյնալով Աթաթիւրքի կամուրջին վրայ քանդած են յենակները, խանգարելով փոխադրութիւնը։ Վնասը կը հաշուեն երկու միլիոն ոսկիէ աւելի։ Կարգ մը շէնքերու հետ փլած է նաեւ Օննիկ Նազարի երկաթի գործարանը։

ՇՈՒԷՏ ԵՒ ՓՈՐԹՈՒԿԱԼ յայտնեցին երէկ թէ այլեւս չեն ուզեր օգտուիլ Մարշըլի ծրագրէն։ Անկէ առաջ Անգլիա եւ Իրլանտա նոյնը ըրած էին։

ՓԱՔԻՍՏԱՆԻ վարչապետ Լիաքաթ խան Յուլիս 6ին Քարաչի հրաւիրած էր Հնդկաստանի վարչապետ Փանտիթ Նէհրուն, կարգադրելու համար Քաշմիրի խնդիրը։ Իբրեւ նախապայման առաջարկած էր Հնդկական բանակը քաշել Քաշմիրէն։ Փանտիթ Նէհրու իր պատասխանին մէջ կը մերժէ այս պայմանը, բայց փափաք կը յայտնէ խաղաղ միջոցներով կարգադրել վէճը եւ գինքը Տէլհի կը հրաւիրէ։

ՆԱԽԱՐԱՐԱԿԱՆ ՏԱԳՆԱՊԸ չէ լուծուած դեռ։ Մորիս Փէչ երկուշաբթի օր տեսակցելէ վերջ նախկին վարչապետներուն հետ, հարկ չտեսաւ միասին ժողովի հրաւիրել երէկ խորհրդարանի մեծամասնութեան վարիչները, որոնց հետ զատ զատ տեսնուեցաւ՝ իր պատասխանը տանելէ առաջ Հանրապետութեան Նախագահին։

ՄՈՒՐԱՑԿԱՆՆԵՐԸ կը վխտան Փարիզի մէջ։ Ըստ օրէնի, ոստիկանութիւնը կրնայ ձերբակալել անոնք, որ 50 ֆրանք չունին իրենց գրպանը։ Արդ բոլոր մուրացկաններն ալ 50 ֆրանքէն աւելի ունենալով, ազատօրէն կը պտըտին։

ՍՈՒՐԻՈՅ վարչապետ Խալէտ էլ Ազէմ պէյ կառավարութեան հրաժարականը ներկայացուց Հանրապետութեան Նախագահին։ Առջի օր կառավարական բոլոր պաշտօնեաները գործադուլ յայտարարած ըլլալով, Դամասկոսի պետական պաշտօնատուները փակուած էին։

ՅՈՐԴԱՆԱՆԻ Թագաւոր Ապտուլլահի մահէն ի վեր կացութիւնը չէ պարզուած դեռ Ամմանի մէջ։ Թագաւորին եղբօրորդին էմիր Ապտիւլլահ որ Իրաքի խնամակալն է, կը մնայ Յորդանանի մայրաքաղաքը, ուր հասած է նաեւ Իրաքի վարչապետ Նուրի փաշա Սայիտ։ Կը կարծուի թէ այս վերջինը պիտի ջանայ իրագործել Մեծ Սուրիոյ ծրագիրը՝ որուն մեծագոյն ջատագովներէն եղած է միշտ։

Արաբական երկիրներու մէջ մեծ ուշադրութեամբ կը հետեւին դէպքերու ընթացքին։

ԱՐԱԲՆԵՐԸ միանգամ ընդ միշտ պէտք է ընդունին որ Իսրայէլի պետութիւնը իրականութիւն մըն է եւ կարելի չէ խնդրոյ առարկայ դարձնել զայն, յայտարարեց Անգլիոյ արտաքին նախարարը խորհրդարանին մէջ։ Եւ աւելցուց թէ Անգլիա ի հարկին զէնքով պիտի միջամտէ ոեւէ պետութեան դէմ որ յարձակում պիտի գործէ ուրիշի մը դէմ։

ՔՈՐԷԱՅԻ զինադուլի բանակցութիւնները կը մնան հոն ուր կը գտնուէին, ոչ մէկ յառաջդիմութիւն։



### ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Արձակուրդի առթիւ հասցէի փոփոխութեան համար մեր բաժանորդներէն կը խնդրուի ղրկել պահանջուած 50 ֆրանքը, ինչպէս նաեւ տեղեկացնել իրենց բուն հասցէն։ Այս առթիւ կը յիշեցնենք որ նկատի չեն առնուիր դիմումները այն բաժանորդներուն, որոնք չեն վճարած իրենց բաժնեգիններ։

Աւելորդ չենք նկատեր անգամ մը եւս կրկնել, որ ներկայ պայմանները եւ մանաւորաբար թուղթի գինին անսովոր յաւելումը թոյլ չեն տար վարչութեանս շարունակել ապառիկ թերթերու առաքումը։

Վարչութիւն



### ԳՐԱՒՈՒԱԾ ՕՐԵՐ

ՏԷՍԻՆ, 15 Օգոստ.— Աստուածածնայ տօնին առթիւ դաշտահանդէս, Հ. Յ. Դ. Կոմիտէի կողմէ։

ԱԼՖՈՐՎԻԼ, 12 Օգոստ.— Հ. Յ. Դ. Մինասեան ենթակոմիտէին դաշտահանդէսը, այժմէն ապահովել օթոքարի տոմսերը։

### ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ ՊՈՄՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Պոմոնի «Զաւարեան» ենթակոմիտէին, մասնակցութեամբ Ֆ. Կ. Խաչի Պոմոնի մասնաճիւղին եւ Հ.Յ.Դ. Պոմոնի «Քրիստափոր» խումբին, այս կիրակի օր, ժամը 4էն մինչեւ կէս գիշեր, Bar Riperti (Մատօ)ի Պոմոնի դաշտին վրայ։ Հայկական եւ եւրոպական պարեր, երգ, արտասանութիւն եւ զանազան անակնկալներ։

## Հայկական դպրոց Ռոնիի մէջ

Ռոնի սու Պուայի մէջ, եկեղեցիի հրապարակին դիմացը, Café du Commerceի վերնայարկը բացուած է վարժարան մը հայ տղոց համար։

Ուսուցչութեան կոչուած է հանրածանօթ Հ. ԲԱԳՐԱՏՈՒՆԻ։ Ռոնիի եւ շրջակայքի ծնողքները կը հրաւիրուին Հինգշաբթի ժամը 2էն սկսեալ արձանագրել տալ իրենց զաւակները, որոնք անմիջապէս կը հետեւին դասերուն։

Église de Rosnyի հրապարակէն կ'անցնին 116, 118, 121 եւ 143 թիւ օթոպիւսները։







## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՊԱՆԵԷՕ – ՔԱՇԱՆ.— «Արծիւ» ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ իր ընկերները, այս ուրբաթ իրիկուն, սովորական հաւաքատեղին։ Բոլորի ներկայութիւնը անհրաժեշտ է։ Կարեւոր օրակարգ։

ԱՆԻԷԹ ՊՈՒԱ ՔՈԼՈՄԲ.— Հ. Յ. Դ. «Արամ» ենթակոմիտէն բացառիկ ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր շրջանի ընկերները այս չորեքշաբթի, Ֆր. ընկ. սրահը, ժամը 21ին։ Կարեւոր օրակարգ։։ Պարտաւորիչ ներկայութիւն։ Գալ անդամատետրերով։

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս չորեքշաբթի իրիկուն ժամը 21ին, սովորական հաւաքավայրը։ Ներկայ կ'ըլլան Կ. Կ.ի եւ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչները։ Կը խնդրուի ճշդապահ ըլլալ։ Ներկայանալ անդամատետրերով։ Խիստ կարեւոր օրակարգ։

Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէն ժողովի կը հրաւիրէ.—

ԹԱԹՈՒԼ խումբը այս չորեքշաբթի ժամը 8.30ին։

ՔՐԻՍՏԱՓՈՐ ենթակոմիտէն այս հինգշաբթի ժամը 8.30ին։

ՎԱՐԱՆԴԵԱՆ խումբը այս ուրբաթ ժամը 8.30ին։

Պարտաւորիչ ներկայութիւն։

Սոյն ժողովներուն ներկայ կ'ըլլայ ընկեր Ս. Տ. ԹՈՎՄԱՍԵԱՆ։

## Կ'ՈՒԶՈՒԻ

Սէն Ժերոմի (Մարսէյլ) Ս. Սահակ Մեսրոպ եկեղեցւոյ համար քահանայ մը, կամ քահանայագործութեան թեկնածու մը, փափաքողները, գրաւոր թող դիմեն Derminassian, 8 Place Pélabon St. Jérome, Marseille։



Le Gérant : A. NERCESSIAN

Imprimerie DER AGOPIAN, 17, rue Damesme (13)

## Անգլիրանեան վէճը

Թեհրանէն կը հեռագրեն թէ վախ կայ որ բանակցութիւնները խզուին, թէեւ բրիտանական եւ իրանեան պատուիրակութիւնները ժողովի հրաւիրուած են այսօր, շաբաթ, Պ. Հէրիմընի միջամտութեամբ։ Անգլիական պատուիրակու-թիւնը կը սպասէ որ Իրան վերջնապէս մերժէ իր առաջարկները, որպէս զի անոր համեմատ ճշդեն իրենց դիրքը։ Պատուիրակութեան անդամներէն մէկը յայտարարեց.— «Մենք առեւտրական ծրագիր մը ներկայացուցինք բաց սրտով, հիմ-նուելով քարիւղի ճարտարարուեստին իրական պահանջներուն վրայ։ Կարելի չէ ուրիշ առա-ջարկներ ներկայացնել»։

Բրիտանական պատուիրակութեան Նախա-գահը, Պ. Սթոքս, երկար տեսակցութիւն մը ու-նեցաւ պարսիկ ծերակուտականներու հետ, բա-ցատրելու համար իր ծրագիրը։ Իրանի փոխ-վարչապետը, Քեազիմ Զաթիմի, յայտարարեց թէ պատրաստ են Անգլիոյ ծախելու իրեն ան-հրաժեշտ քարիւղը. բայց չեն կրնար հաւանիլ որ Անգլիա քարիւղ ստանայ, շահով ծախելու համար։

Նախագահ Թրումընի խորհրդականը, Հէրի-մըն, կը շարունակէ ամէն միջոց փորձել, որպէս զի բանակցութիւնները շարունակուին։ Այս ա-ռաջադրութեամբ, Շահին ալ ներկայացաւ, որ-պէս զի միջամտէ, չափաւորելու համար կառա-վարութեան պահանջները։ Տեսակցեցաւ նաեւ վարչապետին հետ, թելադրելով նորէն քննել բրիտանական առաջարկը։ Իր կարծիքով, բրիտանական ծրագիրը շատ նպաստաւոր է Պար-սիկներուն համար։ Ուստի կը պնդէ որ մոռցուին հին վէճերը եւ ձեռք ձեռքի տան, տագնապը լու-ծելու համար։ «Մեծն Բրիտանիա պէտք ունի Պարսկաստանի քարիւղին, Պարսկաստան չի կըր-նար քարիւղը ծախել առանց բրիտանական գոր-ծակցութեան»։

Իրազեկներ կը հաւատան թէ Իրանի չափա-ւոր տարրերը համաձայն են որ հեէ համաձայնու-թեան յանգելու։

ՓԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱԶԳԱԺՈՂՈՎԻՆ Ապահովութեան Խորհուրդը բանաձեւ մը քուէարկեց, որով կը մեղադրէ Ե-գիպտոսը, «թշնամական եւ յարձակողական» համարելով Սուէզի ջրանցքին փակումը։ Բանա-ձեւը ներկայացուցած էին Անգլիա, Ֆրանսա եւ Մ. Նահանգները։ (Եգիպտոս չուզեր որ քարիւ-ղատար եւ ուրիշ բեռնաբարձ նաւեր անցնին ջր-անցքէն, ապրանք փոխադրելով Իսրայէլի համար)։

ՔՍԱՆ ՀԱԶԱՐ կարմիր գործակալներ կը գտնուին արեւմտեան Գերմանիոյ մէջ, համաձայն հիթլերական իշխանութեան զոհերու Միութեան վերջին տեղեկագրին։ Ուրիշ տասը հազար հոգի ալ կը մարզուին։ — Արեւելեան Պերլինի երիտա-սարդական փառատօնին մասնակցող երիտասարդ-ները նոր փորձ մը կատարեցին, դէպի Ֆրանսա-կան եւ ամերիկեան թաղամասերը խուժելու համար. բայց կէս ճամբան մնացին։

ՔՈՐԷԱՅԻ ԹՈՒՐՔ ԶՕՐԱԳՈՒՆԴԻՆ 1700 հո-գի Պոլիս վերադառնալով, դղրդագին ցոյցերու արժանացան։ Հռատվիր կ'ըսէ թէ հարիւր հա-զար հոգի խռնուած էին Թաքսիմի հրապարակին վրայ։ Ուրախութեան կանչերուն վրայ կը տիրա-պետէր ողբուկոծը, քանի որ 6000 զինուորնե-րուն 21 %ը թաղուած են Քորէայի մէջ։

ՀԻՆԳ ՕԴԱՆԱՒԵՐ կործանեցան, Մալթայի բացերը կատարուած ռազմափորձերու ընթացքին։

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ Երեսփ. ժողովի արտա-քին յարաբերութեանց յանձնախումբը վաւերա-ցուց արտասահմանի օգնութեան համար պահան-ջուած վարկը, 8500 միլիոնէն 7.848.750.000 տոլա-րի զեղչելով գումարը։ — Երեսփ. ժողովը բա-նաձեւ մը քուէարկեց (մէկի դէմ 231), պահան-ջելով խզել առեւտրական յարաբերութիւնները Չեխոսլովաքիոյ հետ։

### ԱՅՆՃԱՐԻ «ՅԱՌԱՋ» ՎԱՐԺԱՐԱՆԻՆ ՀԱՄԱՐ

Տասնեւերկու ամիսներ մեքենաներուն ժխո-րին յոգնութենէն, պահիկ մը հանգստանալու համար, տասնեւերկու օրուան վճարովի արձա-կուրդիս մէկ օրը հաճութեամբ զոհելով հազար ֆրանք կը նուիրեմ Այնճարի մեր սիրելի «Յա-ռաջ» դպրոցին, յառաջիկայ վերամուտին առթիւ, ի նպաստ իր անձնուէր կրթական մշակներուն։ Անշուշտ ուրիշներ ալ պիտի շարունակեն իրենց աջակցութիւնը։

Գ. ՀԱՏԸՄԵԱՆ

ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ վարչութիւնը կը խնդրէ ծա-նուցանել թէ օդափոխութեան երկրորդ խումբը կը մեկնի այս երկուշաբթի առտու ժամը 8.30ին, Հայոց եկեղեցիէն։ Առաջին խումբը կը վերադառ-նայ նոյն օրը, նոյն տեղը, կէսօրէ վերջ։

## Ընտանեկան Դաշտահանդէս

Հ. Յ. Դ. Մարսէյլի Պուլվար Օտտոյի Վռամեան ենթակոմիտէի կողմէ, մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Խատիսեան խումբին եւ Ֆ. Կ. Խաչի, այս կիրակի ամբողջ օրը Սէնթ Անտրէի հանրածանօթ պարտէզին մէջ։

Կը նախագահէ ԸՆԿԵՐ Տ. ԹԱԴՈՅԵԱՆ

Կը խօսի ԸՆԿԵՐ Հ. ՏԱՍՆԱՊԵՏԵԱՆ

Գեղ. խնամուած բաժին. երգ, պար, արտասանութիւն։ Նոր Սերունդին կողմէ պիտի ներկայացուի քրքջալից զաւեշտ մը։ Պիտի նուագէ Պուլվար Օտտոյի նուագախումբը հայկական եւ եւրոպական պարեր։

ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է։

ԾԱՆՕԹ.— Դաշտավայրը երթալու համար փլաս տ'էֆուէն առնել 25 թիւ համրակառքը եւ իջնել վերջին կայարանը։

ՄԱՄՈՒԼԻ ՏԱԿ Է



ՇՈՒՏՈՎ ԼՈՅՍ ԿԸ ՏԵՍՆԷ



Այրի Տիկին Ս. Գ. Ճերահեան, զաւակը Ստեփան, կը հաղորդեն իրենց սիրեցեալ ամուսնոյն եւ հօր

Ա. ՃԵՐԱՀԵԱՆԻ

(Պրուսայի Կիւրլէ գիւղէն)

մահը, որ տեղի ունեցաւ 4 օգոստոսին, 59 տարեկանին, սրտի տագնապի մը հետեւանքով, Լա-Հէյ (Հոլանտա), ուր Ճերահեան ընտանիքը հաստատուած է 1928էն ի վեր։

### ՊԱՏԱՐԱԳ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Երուսաղէմի պատրիարքական նուիրակ ՍԵ-ՐՈՎԲԷ ՎԱՐԴԱՊԵՏ ՄԱՆՈՒԿԵԱՆ որ երկու տարիէ ի վեր Միացեալ Նահանգները կը գտնուէր, Փարիզ հասած ըլլալով, պիտի պատարագէ կիրակի առաւօտ Հայոց եկեղեցին, 15, Rue Jean Goujon.




Imprimerie DER AGOPIAN . 17. rue Damesme (13)

Le Gérant : A. NERCESSIAN


### «ՅԱՌԱՋ»Ի ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Օգոստոսի ընթացքին պէտք է վճարուին բոլոր յետնեալ պարտքերը։

Այն բոլոր բաժանորդները որոնք մանտաչէֆի քառդերով իրենց հաշիւը ստացած են եւ չեն փակած, այլեւս թերթ չեն ստանար, Սեպտեմբեր 1էն սկսեալ։

Արձակուրդի առթիւ երբ հասցէի փոփոխութիւն կը կատարուի, կը խնդրենք չմոռնալ հին հասցէն եւ օրինական վճարումը։

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՌՕՄԱՆ.— Հ. Յ. Դ. Անդրանիկ խումբի ժողովը՝ այս կիրակի առաւօտ ժամը 9ին Արամ Մանուկեանի ակումբին մէջ։ Ներկայ պիտի ըլլան Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչներ։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԽԱՆԱՍՈՐԻ ՏԱՐԵԴԱՐՁԸ Վալանսի մէջ, 26 օգոստոսին։ Մանրամասնութիւնը շուտով։

